Հերը կարեւոր վնասներ պատճառած են սեննմայի մը մէջ ուր խորհրդային չար - ժանկար մը կը ներկայացուէր: Եւ վերջապէս կ'ըսէր թէ Քուսթրինի մէջ Լեհերը ցոյց մը սարքած են, պահանջելով ետ կանչել խորհրդային զօրքը եւ փոխել կառավարութիւնը: Գերման թերթ մը եւս կը գրէ թէ ընդհարումներ ծագած են լեհ եւ խորհրդային զինուորներու միջեւ, վեց տարբեր քաղաքներու միջեւ եւ թէ Վարշաւա-Պերլին գիծը կտրուածէքանիմը կէտերու վրայ: Կ'ըսուի թէ Ռուսերը չէզոք շրջան մը հաստատած են Օտէր - Նայսէ սահմանագծին վրայ, 900 մեթր տարածութեամբ: Խորհրդային պահակներ կը շրջին այս վայրին մէջ, գիշեր ցերեկ:

Միջազգային մամուլը խոստովանելով հանդերձ թէ պաշտօնական տեղեկութիւններ կը պակսին, դիտել կուտայ, — երեք շաբաթէ ի վեր առաջին անգամ ըլլալով խորհրդային հրասայլերը եւ զօրքը մեծ մասով անհետացած են արեւելեան Պերլինէն:

Նոյն աղբիւրներուն համաձայն, զսպողական գործողութիւնները կը շարունակուին արեւելեան Գերմանիոյ մէջ: Ոմանք մինչեւ 50.000 կը հաշուեն բանտարկեալներուն թիւը: Փախստականներ կը պատմեն թէ պաշարման վիճակը կը շարունակուի շատ մը քաղաքներու մէջ:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԻՐԱՆԻ կառավարութիւնը որոշեց որեւէ օտար դրամ չտրամադրել ներածելու համար այնպիսի ապրանքներ որոնք անհրաժեշտ չեն: Այս արգելքը գործադրելի է մինչեւ հոկտեմբեր 22: Շաքարի, կերպասի եւն. ներածման սահմանափակումները պիտի վերջանան Օգոստ. 22ին:

ՈՒԶՊԵԿԻՍՏԱՆԻ կառավարութեան եւ Կեդր. Կոմիտէին դէմ խիստ քննադատութիւններ կը հրատարակէ Մոսկուայի կուսակցական պաշտօնաթերթը, «Փրաւտա», մեղադրելով թէ անհրաժեշտ միջոցները ձեռք չեն առած, զարկ տալու համար բամպակի մշակութեան:

ՆՈՐ ՓՈԹՈՐԻԿՆԵՐ եւ տեղատարափ անձրեւ կը նախատեսուին յուլիս ամսուան համար:

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ խորհրդային հանրապետութեան նախագահ վերընտրուեցաւ Իստվան Տոպի.— Պարզապէս ձեւակերպութիւն: Տոպի 65 տարեկան է, նախկին մանր կալուածատէր եւ նախագահութիւնը կը վարէ 1952 Օգոստոսէն ի վեր:

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ մասին կարեւոր որոշումներ պիտի տրուին մօտերս, կ'ըսէ Դիբելիոս եպիսկոպոս, որ տեսակցութիւն մը ունեցած էր խորհրդային մարզպանին հետ: Բողոքական եպիսկոպոսը մօտալուտ կը նկատէ Զօրսերու ժողովը, քննելու համար Գերմանիոյ խնդիրը:

ՔՈՐԷԱՅԻ զինադադարի մասին համաձայնութիւն չէ գոյացած տակաւին: Ամերիկեան ներկայացուցիչը կը ջանայ համոզել Հարաւ. Քորէայի նախագահը, Սինկման Ռի, որ անելի մը մատնած է բանակցութիւնները:

ՕԴԱՆԱՒԱՅԻՆ ամենամեծ հանդէսը տեղի պիտի ունենայ այսօր, կիրակի, Պուրժէի մէջ, բազմաթիւ արդիական օդանաւերով:

ՓՆՏՌԵՑԷՔ

## ՌՈՒԲԷՆԻ
## ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՄԸ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

150 օրինակ միայն ամբողջ Եւրոպայի համար:

Եօթը հատորը միասին, կ'արժէ վեց հազար Ֆր. թղթատարի ծախքով:

Ստանալու համար դիմել՝

Mme Anna Ter Minassian
La Résidence : 5, Rue Henri Regnault,
St. Cloud ( S. et O. )
FRANCE

Բոլոր առաքումները
Contre remboursement
կամ անձամբ դիմել Յառաջի վարչութեան:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Փարիզի Հայ Տիկ. Միութեան Որբերու Օգն. Մարմինը եւ Կարմիր Խաչը կազմակերպած են գեղարուեստական ցերեկոյթ - պարահանդէս մը կիրակի, 8 Նոյեմբեր, ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, Ամպասատէօրի սրահներուն մէջ:

1, Avenue Gabriel, Paris 8e

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի:

Մէտոնի Պաղ Աղբիւրին մօտ, Կիրակի 5 Յուլիս, ամբողջ օրը: Երթ ու դարձ մասնաւոր օթօքարներով: Գին 250 Ֆր.: Նախօրօք արձանագրուիլ վերոյիշեալ խումբերու ընկերներու մօտ, ինչպէս նաեւ Ճաշարան Արթիւր, Փլաս տէ Ֆէթ:

Բարձրախօս հայերէն եւ ֆրանսերէն պնակիտներով: Առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով:

Սիրով կը հրաւիրուին Իսիի, Քլամարի, Շաւիլի, քոյր կազմակերպութիւնները, խմբովին հայրենաշունչ օր մը անցնելու համար:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական եւ եղանակին վերջին դասախօսութիւնը այս ուրբաթ ժամը 20.30-ին, Ազգ. Տան մէջ:

Դասախօս՝ Պ. ՊԵՐՃ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ: Նիւթը՝ Ակնարկ մը միջնադարեան հայ դրամներու վրայ: Մուտքը ազատ է:

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻՆ.— Տէր եւ Տիկին Մասիս Չիլինկիրեան հազար ֆրանք կը նուիրեն Ֆ.Կ.Խաչի Փարիզի մասնաճիւղին, փոխան ծաղկեպսակի փոքրիկն Ալէն Տոդրամաճեանի մահուան առթիւ:

Ստանալ «Յառաջ»էն:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Վարուժանեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ Պուլվար Օտոյի Հայոց եկեղեցին, իրենց ամուսնոյն եւ հօր՝ Վարդեվան Վարուժանեանի մահուան քառասունքին առթիւ, ինչպէս Վարուժանեան եւ Տէր Ղեւոնդեան գերդաստաններուն յիշատակին: Կը հրաւիրուին իրենց յիշատակը յարգողները:

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Տէր եւ Տիկ. Մ. Մազլըմեան եւ Տէր եւ Տիկին Թուղլաճեան, տասը հազար ֆրանք կը նուիրեն փոխան ծաղկեպսակի, Հ. Կ. Խաչի Օգն. Մարմնի մանուկներու օգափոխութեան կայանին, իրենց մօր, այրի Տիկին Ֆիլօր Մազլըմեանի մահուան առթիւ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հայ Հերոսամարտի Օրը, ԽԱՆԱՍՈՐը, Շաւիլի մէջ: Յուլիս 26ի կիրակի օրը:

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԲԱՑՈՒՄԸ

Երկրորդ հանգստեան տան բացման առթիւ կազմակերպուած է ընդունելութիւն մը այսօր, կիրակի, 5 Յուլիս, ժամը 14էն 19:

36, Bd. du Général de Gaulle,
Montmorency

Մուտքը ազատ է:

Այցելութիւն եւ գեղարուեստական բաժին:

ՀԱՂՈՐԴ.— Կառ մեւ Նօռէն շոգեկառք ժամը 13.33, 13.59, 14.30 եւ 15, իջնել Անկէն եւ կառ մ'Անկէնէն օթօքարը առնել Մօնմօռանսիի համար որ կը մեկնի ամէն քսան վայրկեան: Իջնել Ռուէթ տը Կոօլէյ:

ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ





## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ.Յ.Դ. Նոր Սերունդի Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ այս երեքշաբթի ժամը 9ին: Ներկայ պիտի ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը: Բոլոր անդամներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՀՈՎԱՆՈՑ ՄԸ մոռցուած է Ազգ. Տան մէջ, ուրբաթ օրուան դասախօսութեան ատեն: Դիմել դռնապանին:





Imp. ARAXES 46, Rue Richer, Paris 9e

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԼԵՀԱՍՏԱՆԻ կացութեան մասին նորէն շռնդալից լուրեր կը հաղորդեն կարգ մը թերթեր, ըսելով թէ ապստամբութիւն ծագած է Սիլեզիոյ մէջ, ճիշդ այն օրը երբ կ՚ըմբոստանար արեւելեան Պերլինը: «Թէլէկրաֆ» թերթը կը գրէ թէ յունիս 29ին 30.000 բանուորները ցոյց մը կատարեցին Քրաքովիոյ քաղաքապետարանին առջեւ, 1500 ուսանողներ ալ՝ համալսարանին առջեւ, բոլշեւիկեան կառավարութեան տապալումը պահանջելով: Պաշտօնական տեղեկութիւններ կը պակսին. իսկ Վարշաւայի անթելը հերքեց այս լուրերը, իբրեւ անհիմն:

ԱՆԳԼԻՈՅ ՄՍԱՎԱՃԱՌՆԵՐՈՒ ընկերակցութիւնը, որ 35.000 անդամ ունի, որոշեց չծախել Աւստրալիայէն ներածուած ոչխարի միսերը, «որոնք հին կոշիկներու համն ունին»: Պարենաւորման նախարարութիւնը կը սպառնայ, բայց անօգուտ:

ԵՈՒԿՈՍԼԱՒԻՈՅ փոխ-վարչապետը, Քարտել, հաստատելով հանդերձ թէ Խ. Միութիւնը կը փորձէ բնականոն յարաբերութիւններ հաստատել, յայտարարեց. — «Զենք կրնար երկար ատեն հաւատալ Մոսկուայի խաղաղասիրական հաւաստիքներուն վաւերականութեան, ցորչափ Խ. Միութիւնը արմատապէս չէ փոխած իր միջազգային քաղաքականութիւնը եւ մասնաւորապէս հակաեւրոպական ընթացքը: Մոսկուա միայն ռազմավարութիւնը փոխած է: Մենք գործի կը սպասենք եւ ոչ թէ խօսքի»:

ԱՐԵՒՄՏԵԱՆ Գերմանիոյ վարչապետը կիրակի օր ճառ մը խօսելով, ազդարարեց թէ «համայնավարութիւնը յառաջ կը խաղայ ամէն տեղ եւ թէ Գերմանիան ամենածանր թշուառութեան պիտի մատնուի եթէ չդաշնակցի արեւմուտքի»: Եւ յիշեցուց թէ կնքուած դաշնագիրները պիտի վաւերացուին, հակառակ ընկերվարականներու ընդդիմութեան: «Եթէ ընկերվարականները իշխանութեան գլուխ անցնելով պատռեն հաշտութեան եւ եւրոպական բանակի դաշնագիրները, այդ հսկայական ցնցում մը պիտի ըլլայ աշխարհի համար, տնտեսական - քաղաքական թշուառութեան մատնելով Գերմանիան»: Արեւմտեան Գերմանիան արդէն վաւերացուցած է եւրոպական բանակի դաշնագիրը, որուն համաձայն 500.000 զինուոր պիտի տրամադրէ:

ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ վերջացաւ կիրակի օր: Ընդունելով հանդերձ եւրոպական բանակի ծրագիրը, բանաձեւը համաձայն չէ անոր անմիջական վաւերացման եւ կարգ մը երաշխիքներ կը պահանջէ Գերմանիոյ վերազինման մասին:

ԿԵՂԾ ՏՈԼԱՐՆԱՐ կը շինէր գաղտնի տպարան մը՝ Մալաքովի մէջ: Ոստիկանութիւնը գրաւեց մեծ քանակութեամբ 20, 50 եւ 100 տոլարնոց կտրոններ եւ ձերբակալեց հինգ հոգի:

ՍՈՒՐԻՈՅ հանրապետութեան նախագահութեան միակ թեկնածու հռչակուեցաւ զնդ. Շիշաքլի: Ընտրութիւնը պիտի կատարուի Յուլիս 10ին:

ԳԱՀԻՐԷԻ ոստիկանութիւնը ձերբակալեց խումբ մը համայնավարներ երբ գաղտնի ժողով մը կը գումարէին: Տպարան մըն ալ երեւան հանուեցաւ եւ բազմաթիւ թռուցիկներ բռնուեցան: Զինուորական ատեան մը պիտի դատէ ամբաստանեալները:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ալֆորվիլի Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր Կարապետ Պալեանի եւ իր պարագաներուն իր հօրը մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի հազար ֆրանք կը նուիրէ Հ. Յ. Դ. Տան ֆոնտին:



Imp. ARAXES 46, Rue Richer, Paris 9e

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական եւ եղանակին վերջին դասախօսութիւնը այս ուրբաթ ժամը 20.30–ին, Ազգ. Տան մէջ:

Դասախօս՝ Պ. ՊԵՐՃ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ: Նիւթը՝ Ակնարկ մը միջնադարեան հայ դրամներու վրայ: Մուտքը ազատ է:

### ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ ԼՈՒՐՏ

Օգոստոս 16 – 23

Արձանագրութեան եւ պայմաններու համար դիմել՝

Rev. Père V. Momdjian,
78, Rue Rabelais, LYON
ou Rev. Père V. Babian,
11, Rue Belle Image, VALENCE

Արձանագրութեան վերջին պայմանաժամը Յուլիս 25:

Այրի Տիկին Արաքսի Բազումեան եւ զաւակները՝ Տէր եւ Տիկին Յ. Պահչէճեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Արշակ Բազումեան եւ զաւակները ու բոլոր ազգականները սրտի խորունկ ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծհօր եւ ազգականին՝

### Պ. ԱՐՏԱՇԷՍ ԲԱԶՈՒՄԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ իր բնակարանին մէջ, 1 ռիւ Փիէռ Պրոսոլէթ, Առնուվիլ լէ Կոնէս, 72 տարեկան հասակին:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր, երեքշաբթի ժամը 3.15ին Առնուվիլի Հայոց եկեղեցին:

Հաղորդ. միջոց. — Օթօպիւս թիւ 268 Փորթ տը լա Շափէլէն եւ Կառ տիւ Նոռէն ժամը 2.20ի շոգեկառքը:



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հայ Հերոսամարտի Օրը, ԽԱՆԱՍՈՐը, Շաւիլի մէջ: Յուլիս 26ի կիրակի օրը:

ՓՆՏՌԵՑԷՔ

### ՌՈՒԲԷՆԻ
### ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՄԸ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

150 օրինակ միայն ամբողջ Եւրոպայի համար:

Եօթը հատորը միասին, կ՚արժէ վեց հազար ֆր. թղթատարի ծախքով:

Ստանալու համար դիմել՝

Mme Anna Ter Minassian
La Résidence : 5, Rue Henri Regnault,
St. Cloud ( S. et O. )
FRANCE

Բոլոր առաքումները Contre remboursement

Կամ անձամբ դիմել Յառաջի վարչութեան:

### ՀԱՄԱԶԳ. ՓԱԼԱՆՃԵԱՆ ՃեՄԱՐԱՆ

Համազգայինի Նշան Փալանճեան ճեմարանի տնօրէնութիւնը պատիւ ունի յայտնելու հասարակութեան, թէ եկող տարեսկիզբէն – Հոկտեմբեր – պիտի բացուի ճեմարանի գիշերօթիկ բաժինը առայժմ միայն մանչերու համար: Աշակերտներ կ՚ընդունուին բոլոր երկիրներէ:

Մօտերս լոյս կը տեսնէ գրքոյկ մը, որուն մէջ պիտի տրուին ընդհ. տեղեկութիւններ ճեմարանի մասին, ծրագրի ամփոփումը, ընդունելութեան պայմանները:

Տնօրէնութիւնս սիրով կ՚ուղարկէ ցանկացողներուն: Հասցէ՝

Collège Arménien, 10, Rue Hussein Betrum
Beyrouth - Liban



Օր. ԱԼԻՍ-ԱՂԱՒՆԻ ՏէՐ ՍԱՐԳԻՍԵԱՆ
Պ. ՕՆՆԻԿ – ԺԱՆ ԱՌԱՔԵԼԵԱՆ

Ամուսնացած

29 Յունիս, 1953 Վալանս

× Այս առթիւ շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք իրենց ներկայութեամբ, կամ գրաւոր շնորհաւորեցին նորապսակ ամոլը:

Հարսին ծնողքը Տէր եւ Տիկին Ա. Տէր Սարգիսեան հազար ֆրանք կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման ֆոնտին, հազար ֆրանք ալ «Հայ-Բոյժ»ին:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ.Յ.Դ. Նոր Սերունդի Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ այս երեքշաբթի ժամը 9ին: Ներկայ պիտի ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը: Բոլոր անդամներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

մը կը հետեւին, տնտեսական խնդիրը մէկդի դնելով եւգիերմանիոյ ներկայ սահմանադրութեան դէմ բողոքելով ։ Եւ աղ-դարարեց․— « Անոնք որ կը բողոքեն պատերազմ կ՚ուզեն։ Ուստի անհրաժեշտ է երեւան հանել թշնամի տարրերը որոնք կը խանգարեն խաղաղ վերաշինութիւնը ։ Կուսակցութիւնը պիտի ջանայ բարուքել աշխատաւորներուն վիճակը, բայց պիտի չբանակցի ամերիկեան դրամատէրներու գործակիցներուն հետ» ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ վերաքննութեան օրինագծին քննութիւնը կը շարունակուի Ազգ․ ժողովին մէջ ։ Թերթերը ցաւով դիտել կուտան թէ ուրբաթ օրուան նիստին ներկայ էին միայն 50 երեսփոխաններ։ Նախապէս 101ի դէմ 495 ձայնով մերժուած էր Համայնավարներուն մէկ բանաձեւը որ կը պահանջէր մէկդի դնել վերաքննութեան խնդիրը ։ Ծայր․ ձախակողմը աւելորդ եւ վնասակար կը գտնէ վերաքննութիւնը ։

ԱՆԳԼԻՈՅ Մարգրիտ իշխանուհին, 22 տարեկան, սիրահարած է 38 տարեկան օդաչու սպայի մը՝ գնդ․ Թաունսէնտի հետ, որ ամուսնալուծուած է եւ երկու զաւակներ ունի։ Կառավարութիւնը Պրիւսէլ փոխադրեց սպան, նոր պաշտօն մը տալով, իսկ իշխանուհին (Էլիզապէթի քոյրը) Հարաւ․ Ափրիկէ գնաց երկու շաբթուան համար։ Այժմ Լոնտոն վերադարձած ըլլալով, խնդիրը նորէն կ՚արծարծուի։ Թերթ մը հարցարան բացաւ եւ 66 հազար ընթերցողներ հաւանութիւն յայտնեցին որ իշխանուհին ամուսնանայ գնդապետին հետ, իսկ 2200 հոգի անյարմար կը նկատեն։ (Անգլ․ թերթը 4.500.000 ընթերցող ունի)։

ԹԵՀՐԱՆԻ խորհրդային դեսպան նշանակուեցաւ Անատոլ Լաւրենտիյեւ, որ նախապէս նոյն պաշտօնը վարած է Պելկրատի, Պուքրէշի եւ Փրակայի մէջ ։ Եղած է նաեւ օգնական արտաքին նախարար ։

ԳԵՂԵՑԿՈՒԹԵԱՆ տիեզերքի թագուհի հռչակուեցաւ Ֆրանսուհի մը, Օր․ Քրիսթիան Մարթէլ, որ 18 տարեկան է ։ Թուրքերն ալ գեղուհի մը ղրկած էին, չուայլաբան հաւաստիքներով, ինչպէս անցեալ տարի ։

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻԱՅԷՆ հասած լուրերու համաձայն, մաքրագործումները կը շարունակուին ամբողջ երկրին մէջ ։

ԵՈՒԿՈՍԼԱՒԻԱ ծանուցագիր մը ստացաւ Ֆրանսայի, Անգլիոյ եւ Մ– Նահանգներուն կողմէ։ Երեքը միասին կ՚առաջարկեն զինուորական խորհրդակցութիւն մը կատարել, Եուկոսլաւիոյ ընծայուած օգնութեանց առթիւ։

ՓՆՏՌԵՑԷՔ

## ՌՈՒԲԷՆԻ
## ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՄԸ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

150 օրինակ միայն ամբողջ Եւրոպայի համար ։

Եօթը հատորը միասին, կ՚արժէ վեց հազար ֆր․ թղթատարի ծախքով ։

Ստանալու համար դիմել՝

Mme Anna Ter Minassian
La Résidence : 5, Rue Henri Regnault,
St. Cloud ( S. et O. )
FRANCE

Բոլոր առաքումները
Contre remboursement
կամ անձամբ դիմել Ցառաջի վարչութեան ։

## ԿԱՐՕՏՑԱ՞Ծ ԷՔ
## ՊՈԼՍՈՅ ՊԱՂՊԱՂԱԿԸ

Մինչեւ Վոսփորի ափերը վազելու պէտք չկայ․․․

Հանդիպեցէք անգամ մը
ԱՆՈՒՇԱՎԱՃԱՌ
ՄԱՐԳԱՐԵԱՆԻՆ խանութը՝
32, Rue de Trévise, Paris (9)
Tél. TAI. 65 - 44

ԵՒ

համը նայեցէք իր շինած պաղպաղակին (սալեպով)։

ՄԻ ՄՈՌՆԱՔ ՆԱԵՒ ԱՐՋԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆԵԼԷ ԱՌԱՋ ՁԵՐ ՃԱՄԲՈՒՆ ՊԱՇԱՐԸ ՀՈԳԱԼ ԻՐ ՁԱՆԱԶԱՆ ԵՒ ԶԱՐՄԱՆԱԶԱՆ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՆՈՒՇԵՂԷՆՆԵՐՈՎ ։

## ԽԱՆԱՍՈՐԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Խանասորի հերոսամարտը կը տօնուի Մարսէյլի մէջ Օգոստոս 9ին, Վալապրի անտառը։

Շրջ․ կոմիտէն կը հրահանգէ ենթակոմիտէներուն եւ խումբերուն, որ օր առաջ կարգադրութիւններ ընեն հաղորդակցութեան միջոցներ ապահովելու համար ։

## Ս․ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Սեւրի Մուրատեան վարժարանին համար կ՚ուզուի երիտասարդ (մինչեւ 50 տարեկան) զարգացած, բարեկիրթ եւ դաստիարակչական պայմաններու տեղեակ հսկիչ մը։

Ներկայանալ տեսչութեան՝

26, Rue Troyon, Métro Pont de Sèvres
Tél. OBS. 18 - 28

× Նոյն վարժարանին համար կ՚ուզուին նաեւ կին եւ այր ծառաներ ։

Ներկայանալ նոյն հասցէին ։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ա․ ՄԱՍ․— Նախնական շրջանէն մինչեւ քրիստոնէութիւն։ Կազմեց Գ․ Գիրիճեան։ Հրատ․ Համազգային ընկերութեան (թիւ 41)։ Պատկերազարդ, ընտիր տպագրութեամբ։ 372 մեծադիր էջ։ Պէյրութ, 1953։ Գին 6 լ․ ոսկի։ Հասցէ․ — Collège Arménien, 10, Rue Hussein Beyhum
Beyrouth - LIBAN



## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Մեր բաժանորդներուն կը ղրկուին հետզհետէ մանտա – քարթեր իրենց հաշիները փակելու համար։ Կը խնդրենք բոլորէն անյապաղ պատասխանել ։

Հասցէի փոփոխութեան համար կը խնդրուի ղրկել 50 ֆրանք, (արձակուրդի առթիւ փոփոխութիւնները 100 ֆրանք)։ Արձակուրդի շրջանին համար կ՚ընդունինք մէկ ամսուան բաժանորդագրութիւններ 300 ֆրանք ։

Կանխայայտ շնորհակալութեամբ ։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### Ֆ․ Կ․ԽԱՉԻ ԿԱՅԱՆԸ

Բ․ խումբի համար դեռ քանի մը տեղեր բաց ըլլալով կը խնդրուի փափաքողներէն փութով դիմել Տիկին Թաշճեանի, արձանագրելու իրենց զաւակները, 5ռիւ Մէյրան, Փարիզ։

Ա․ խումբի ծնողներէն անոնք որ կ՚ուզեն Բ․ շրջանին եւս պահել իրենց զաւակները թող հաճին դիմել նոյն հասցէին։ Հեռաձայն TRU. 27 - 35

## Կ՚ՈՒԶՈՒԻ

Մանիւթանսիոնի մէջ աշխատելու ընդունակ 16–18 տարեկան աղջիկ մը, թրիքոյի հաստատութեան մը համար։

Դիմել «Յառաջ»ի միջոցաւ ։



Imp. Araxes - 46, rue Richer, Paris.

ՏՐԱՄԱԴՐԵԼԻ է սենեակ մը խոհանոցի դիւրութեամբ։ Քլիշիի մէջ ։

Դիմել ճաշարան Արթիւր, Փլաս տէ Ֆէթ ։

### ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌԷ

Ուսեալ եւ փորձառու հայ օրիորդ մը կը փափաքի աշխատիլ հայ ընտանիքի մը մօտ իբրեւ մանկատած կամ հիւանդապահուհի։ Մատչելի պայմաններ։ Լաւագոյն վկայականներ։

Դիմել մինչեւ Յուլիսի վերջ՝ Հ․ Բ․ Ը․ Մ․ի դրասենեակը՝

11, Square Alboni, Paris 16e

ման համար եւ կը յայտարարէ թէ պատրաստ է ամէն կարելի աջակցութիւն ընծայելու» :

× Ֆրանսայի վարչապետը, Պ. Լանիէլ, յայտարարեց թէ «զինադադարը կը զօրացնէ տեւական խաղաղութեան մը յոյսը աշխարհի մէջ: Հաւաքական ապահովութեան սկզբունքին առաջին գործադրութիւնն է այս: Քորէայի գործողութեանց մահացու դասը այսուհետեւ պիտի ազդէ ռեւէ նախայարձակի մտքին վըրայ»: Վարչապետը մաղթեց որ խմաստութիւնը հասնի մինչեւ միւս ռազմադաշտը, Հնդկաչին :

Արտաքին նախարարը, Պ. Պիտօ յայտարարեց թէ զինադադարը «յաջողութիւն մըն է ,դաս մը, յոյս մը»: Իր կարծիքով, զինադադարը կրնայ վարակիչ դառնալ, առաջին առթիւ, Հնդկաչինի համար :

Նախկին վարչապետ մը, Փօլ Ռէնօ, զինադադարը կը նկատէ « բարոյական պարտութիւն մը քանի որ նախայարձակը պատժուեցաւ»: Պ. Ռ. Շուման, նոյնպէս նախկին վարչապետ, զինադադարը կը նկատէ «բացորոշ ազդարարութիւն մը որ կրնայ խափանել նախայարձակման կրկնութիւնը »:

Անգլիոյ եւ Ամերիկայի մէջ կը կարծեն թէ այժմ սուր դարձած Հանգամանք ստացած է Հնդկաչինի խնդիրը, — օր առաջ դադրեցնել պատերազմը: Անգլիա կ'ուզէ որ Զինաստան ընդունուի Ազգաժողովին մէջ, մեղմացնելու համար միջազգային կացութիւնը :

▪▪▪▪▪▪▪▪▪▪

ՊՈՒՔՐԷՇԻ խորհրդային դեսպան նշանակուեցաւ Ուկրայնայի Կեդր. Կոմիտէին քարտուղարը: Մելնիքով, որ պաշտօնանկ եղած էր Յունիս 13ին, Բերիայի կողմէ, այն ամբաստանութեամբ թէ «ռուսացման» քաղաքականութիւն կը վարէ :

90 ՏԱՐԵԿԱՆ «երիտասարդ» մը, որ բըժիշկ է, հայր եղաւ Մ. Նահանգներուն մէջ :

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ.— Վտարանդի, Մարսէյլ.— Վասն զի դժուար էր ճշդել անունները :

Վիէն, Տիգրանուհի.— Շատոնց ստացած ենք:

Տէսին, Գ. Պ.— Ունինք, բայց կրնաք գրադել :

▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪▪

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վռամեան ենթակոմիտէի կողմէ, (Պուլվար Օտտօ), հովանաւորութեամբ Մարսէյլի Շրջ. կոմիտէի, այս կիրակի, Սէնթ Անտրէի օդասուն պարտէզին մէջ :

Կը խօսի ընկ. Տ. ԹԱԴՈՒԵԱՆ

Խնամուած գեղարուեստական բաժին, սիրայօժար մասնակցութեամբ Նոր Սերունդի «Խատիսեան» խումբի եւ Ֆ. Կ. Խաչի:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ֆր. Կ. Խաչի Վիէնի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհին Վերժին Երամեանի եւ իր բոլոր պարագաներուն իր անդրանիկ զաւկին ԲԱԲԳԷՆԻ (19 տարեկան) մահուան առթիւ: Այս առթիւ փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է 2.500 Ֆր. ի նպաստ Կ. Խաչի դպրոցներուն, ինչպէս ծանուցուած էր «Յառաջ»ի մէջ (28 Յուլիս):

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ֆր. Կ. Խաչի Վիէնի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Գազանճեան ընտանիքին, իրենց քրոջ՝ Օր. ԱՆԺԷԼ ԳԱԶԱՆՃԵԱՆի անձնապանութեան առթիւ: Դժբախտ աղջիկը Սոն գետը նետուելով, վերջ տուած է իր կեանքին: Երկար տարիներէ ի վեր կը տառապէր ջղային հիւանդութենէ մը: Ողբացեալը Կ. Խաչի «Արաքս» երգչախումբին անդամուհիներէն էր :

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Կը փութամ խորին շնորհակալութիւնս յայտնել բոլոր այն այցելուներուն որ եկան զիս մխիթարել, երբ ծանր արկածով մը փոխադրուած էի Լիոնի Կռանշ – Պլանշի հիւանդանոցը :

Այժմ տունս վերադարձած եմ :

Կրկին ջերմագին շնորհակալութիւններ բոլոր բարեկամներուս, Սէ-Ֆօնէն, Լիոնէն, Մարսէյլէն, Սէն Մորիսէն, Տեսինէն, Միրիպէլէն եւ Փարիզէն:

Կ. Գամպէրեան, (Միրիպէլ):

## ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վիէնի կոմիտէի կողմէ, այս կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ էսդրէպլինի, Պ. Պառալի դաշտին վրայ (նախորդ տարուան տեղը):

Կը խօսի ընկեր Մ. ՄԻՐՋԻ : Առատ կերուխում: Նուագ բարձրախօսով:

Երթեւեկի ժամերը իմանալ տեղին վըրայ:

## ԽԱՆԱՍՈՐԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Խանասորի հերոսամարտը կը տօնուի Մարսէյլի մէջ Օգոստոս 9ին, Վալապրի անտառը:

Շրջ. կոմիտէն կը հրահանգէ ենթակոմիտէներուն եւ խումբերուն, որ օր առաջ կարգադրութիւններ ընեն հաղորդակցութեան միջոցներ ապահովելու համար :

ՓՆՏՌԵՑԷՔ

## ՌՈՒԲԷՆԻ ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՄԸ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

150 օրինակ միայն ամբողջ Եւրոպայի համար :

Եօթը հատորը միասին, կ'արժէ վեց հազար Ֆր. թղթատարի ծախքով :

Ստանալու համար դիմել՝

Mme Anna Ter Minassian
La Résidence : 5, Rue Henri Regnault,
St. Cloud ( S. et O. )
FRANCE

Բոլոր առաքումները

Contre remboursement

Կամ անձամբ դիմել Յառաջի վարչութեան :

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ա. ՄԱՍ.— Նախնական շրջանէն մինչեւ քրիստոնէութիւն: Կազմեց Գ. ԳԻՒԶԱԼԵԱՆ: Հրատ. Համազգային ընկերութեան (թիւ 41): Պատկերազարդ, ընտիր տպագրութեամբ: 372 մեծադիր էջ: Պէյրութ, 1953: Գին 6 լ. ոսկի: Հասցէ. —

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ. ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ.— Թարգմանութիւն, ներածութիւն եւ ծանօթութիւններ դոկտոր Ստ. Մալխասեանի: Ընտիր թուղթի վրայ եւ գեղեցիկ տպագրութեամբ, լաթակազմ. 600 էջ: Տպ. «Յուսաբեր», Գահիրէ. 1953: Գին 3 տոլար:

Փնտռել հայ գրավաճառներու մօտ:



ՏՐԱՄԱԴՐԵԼԻ է սենեակ մը խոհանոցի դիւրութեամբ: Քլիշիի մէջ :

Դիմել ճաշարան Արթիւր, Փլաս տէ Ֆէթ, Փարիզ, (19):

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄԸ «Les Simianes»-ի ՄԷՋ (Haute Jarrie) ԿՐԸՆՈՊԼԻ ՇՐՋԱՆ

Օգոստոս չորսէն մինչեւ 30 :

Մասնակցողները պէտք է դիմեն

E. Mavian, 2, Rue des Dardanelles
Paris 17·

Անոնք որ Նոր Սերունդի անդամ չեն եւ կը փափաքին մասնակցիլ, պէտք է դիմեն իրենց շրջանի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի վարչութեան :

ՊԱՅՄԱՆՆԵՐ.— Օրական 400 Ֆր. եւ 1000 Ֆր. բնակավայրի վարձք, (հինգ օրէն պակաս մնացողներու համար 500 ֆրանք): Ճամբու ծախքը մասնակցողներուն վրայ: Խմբովին ճամբորդողները մասնաւոր զեղչ կը ստանան տոմսակի արժէքին վրայ :

ԱՆՀՐԱԺԵՇՏ ԳՈՅՔԵՐ.— Սաւան, վերմակ, բարձ, կերակուրի սպաս եւ անհատապէս անհրաժեշտ համարուած գոյքեր:

ԾԱՆՕԹ.— Օգոստ. 4ի առտուն կեդր. վարչութենէն մէկը պիտի սպասէ Կրընոպլի կայարանը, խումբերը առաջնորդելու համար բանակավայր :

Առանձին եկողներու համար բանակավայրի հասցէն՝

Chateau «Les Simianes»
Chez Mme Marcombe
Haute - Jarrie, Isère

Կրընոպլէն ետք օթօքարի սպասարկութիւն՝ դէպի Հօթ Ժարի :



Imp. Araxes - 46, rue Richer, Paris.

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Հասցէի փոփոխութեան համար կը խնդրուի ղրկել 50 Ֆրանք, (արձակուրդի առթիւ փոփոխութիւնները 100 Ֆրանք): Արձակուրդի շրջանին համար կ'ընդունինք մէկ ամսուան բաժանորդագրութիւն, 300 Ֆրանք :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Արամ Ենթակոմիտէի ժողովը այս ուրբաթ ճամը 21ին ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն խորհրդակցական ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ենթակոմիտէներու եւ խումբերու վարչութեանց դիւանները այս հինգշաբթի ժամը 21ին, Ահարոնեան Ակումբը :

ՄԱՐՍԷՅԼ.— Համախարբերդցիական Միութեան մասնաճիւղին ընդհ. ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին, պառ տիւ կլօպ, պուլվառ տ'Աթեն: Օրակարգ.— Դաշտահանդէսի հաշուետուութիւն եւ պատգամաւորներու ընտրութիւն: Բոլոր անդամներուն ներկայութիւնը պարտաւորիչ:

